## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ԴԻՏՈՂԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐ

Էջ

1961 թվականի մեր բնագծերը . . . 1

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

Ի պատիվ ՍՄԿԿ XXII համագումարի . . 5

ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

Յ. Շաղենց— Գեղարվեստական խոսքը ագիտատորի մարտական զենքն է . . . 13

Ա. Սարգսյան— Զրույց երկարօրյա դպրոցների մասին . . . . . . . 20

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

Վ. Լևին— Հակակոմունիզմի դրոշի ներքո . 28

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար . . . . . 40



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, Հեռախոս՝ 2—52—78։




## 1961 ԹՎԱԿԱՆԻ ՄԵՐ ԲՆԱԳԾԵՐԸ













## Ի ՊԱՏԻՎ ՍՄԿԿ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

### (Թվեր և փաստեր)

Նախահամագումարյան համաժողովրդական սոցիալիստական մրցությունը օրեցօր ավելի ու ավելի է ծավալվում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում։ Ռեսպուբլիկայի աշխատավորները արժանավայել գործերով են նշանավորում հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարը։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

Երևանի հիդրոպոմպերի գործարանում վերջին հինգ ամսում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 6,8 տոկոսով, տնտեսվել են ավելի քան 6.500 ռուբլու հումք և զանազան նյութեր։ Անցած հինգ ամսվա արտադրական պլանը գործարանի կոլեկտիվը գերակատարել է 9,1 տոկոսով։

Հինգ ամսվա արտադրական պլանը

116,4 տոկոսով է կատարել Երևանի ավտոպահեստամասերի գործարանի մեխանիկական № 1 ցեխի կոլեկտիվը։ Այստեղ մրցության շատ առաջավորներ արդեն աշխատում են 1962 թվականի հաշվին։

Հինգ ամսում Երևանի Կիրովի անվան գործարանի 1—7 ցեխի կոլեկտիվը տնտեսել է 125 տոննա հումք։ Ցեխի կոլեկտիվը որոշել է տնտեսել այնքան հումք, որ ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը, հոկտեմբերի 17-ին աշխատի այդ հումքի հաշվին։

Գերակատարելով անցած հինգ ամսվա արտադրական պլանը, Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանի կոլեկտիվը պլանից ավելի է թողարկել 92 հազար ռուբլու արտադրանք։ Նույն գործարանի բրիգոլի տեղամասի աշխատողները մայիս ամսվա պլանը կատարել են 106,9 տոկոսով։

Այս տարվա հինգ ամսում տասնյակ տոննա կենդանական և բուսական յուղ ու տնտեսական օգտագործման տարբեր տեսակի օճառներ է պլանից ավելի թողարկել Երևանի ճեթ-օճառ կոմբինատի կոլեկտիվը։



Ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի կոմբինատի աշխատողները պարտավորվել են լրացուցիչ կերպով բաց թողնել 200 տոննա մարգարին, 150 տոննա ճարպայուղ և մի քանի տասնյակ տոննա օճառ։

Նախահամագումարյան մրցությունը նոր հաջողությունների է հասցրել Երևանի ասֆալտ-բետոնի գործարանի կոլեկտիվին։ Ընթացիկ տարվա հինգ ամսվա պլանը գործարանի կոլեկտիվը կատարել է 146 տոկոսով։ Պլանով նախատեսված էր հինգ ամսում թողարկել 26 հազար տոննա ասֆալտ-բետոն, թողարկված է 39 հազար տոննա։ Այժմ գործարանի կոլեկտիվը ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի ստանձնել է լրացուցիչ պարտավորություններ։ Աշխատանքի արտադրողականությունը 3 տոկոսի փոխարեն կոլեկտիվը պարտավորվել է բարձրացնել 5 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքն իջեցնել 2 տոկոսով։

Մայիս ամսվա արտադրական պլանը Երևանի ալյումինի գործարանի կոլեկտիվը կատարել է 102,7 տոկոսով։ Հինգ ամսում գործարանում կատարվել է 3,5 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի խնայողու-

թյուն։ Գործարանի ֆոլգագլանման ցեխը 150—160 տոկոսով է կատարում օրվա պլանը։

Այժմ Երևանի Ստալինյան շրջանում 20 հազար բանվորներ պայքարում են կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման արժանանալու համար։

Նախահամագումարյան մրցության այս օրերին աշխատանքային նոր հաջողություն են ձեռք բերում Լենինականի արդյունաբերական ձեռնարկությունները։ Էլեկտրատեխնիկական գործարանի կոլեկտիվը մոտ մեկ ամիս շուտ է կատարել այս տարվա կիսամյա պլանը։ Այս տարվա հինգ ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, գործարանը 70 տոկոսով ավելի արտադրանք է թողարկել։

Կիրովականի քիմկոմբինատի կոմունիստական աշխատանքի № 1 ցեխի № 2 բաժանմունքի կոլեկտիվը մայիս ամսին կատարել է այս տարվա առաջին կիսամյակի պլանը։

Դիլիջան քաղաքի գորգագործական ֆաբրիկան հինգ ամսվա պլանը կատարել է



112,9 տոկոսով, թողարկելով 414 գորգ։ Նույն ժամանակաշրջանում ֆաբրիկան արտադրել է նաև 419 քառակուսի մետր կարպետ։

Նույն քաղաքի անտառարգելոցի կոլեկտիվը 60 հեկտարի փոխարեն ծառ է տնկել 75 հեկտար տարածության վրա։ Անտառարգելոցի լայն սպառման առարկաների ցեխը տարեկան արտադրական պլանը կատարել է հունիսի 1-ին և այն էլ 150 տոկոսով։

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոլեկտիվը անցած հինգ ամսվա պլանը կատարել է ժամկետից 12 օր շուտ, 111,4 տոկոսով։ Նույն ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 5 տոկոսով։ Կոմբինատի քիմիական ցեխը 5 ամսում կատարել է 6 ամսվա արտադրական պլան։ Երկրին ավելի շատ պղինձ, ծծմբաթթու, պարարտանյութեր և քիմիկատներ,— այս նշանաբանով է աշխատում կոմբինատի կոլեկտիվը։

Ղափանի պղնձահանքային կոմբինատի կոլեկտիվը հինգ ամսում կատարել է հինգ ու կես ամսվա արտադրական նորմա։ Կոմ-

բինատում լայնորեն արմատավորվում է նորագույն տեխնիկան։ Հանքերում արդեն տեղադրվել են տասը ամբարձիչ մեքենաներ, ութ էլեկտրաքարշիչներ և այլն։

Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվը գերակատարել է մոլիբդենի կոնցենտրատի թողարկման անցած հինգ ամսվա պլանը։

Աշխատանքային նոր հաջողություններով են դիմավորում ՍՄԿՊ XXII համագումարը նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ Մինչև հունիսի 1-ը կոլտնտեսություններն ու սովխոզները կատարել են 195 հազար 800 հեկտար գարնանացան, որն անցյալ տարվանից ավելի է 25 հազար 760 հեկտարով։

Կոլտնտեսություններն ու սովխոզներն անցյալ տարվա համեմատությամբ 18 հազար 510 հեկտար հացահատիկային կուլտուրաներ ավելի են ցանել։

Այս տարվա չորս ամսում, անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, Կամոյի շրջանի Բադիկյան գյուղի կոլտնտեսությունը խոզի մսի արտա-



դրությունն ավելացրել է 2,8 անգամ։ Ֆերմայում բտվում է 80 խոզ, որոնցից յուրաքանչյուրի օրական քաշաճը հասնում է 500—600 գրամի։

Ապիտակի շրջանի Մեծ Պարնիի կոլտնտեսության անասնապահները պարտավորվել էին ապրիլ ամսին կաթի համախառն արտադրությունը հասցնել 86.700 լիտրի։ Այդ պարտավորությունը գերակատարվեց 2.100 լիտրով։

Վեդու շրջանի կոլտնտեսությունները նախատեսված ժամկետից 20 օր շուտ են կատարել պետությանը կաթ վաճառելու կիսամյա առաջադրանքը։ Նախատեսված 12.870 ցենտների փոխարեն պետությանը վաճառված է 13.123 ցենտներ կաթ (հունիսի 10-ի տվյալներով)։

Ապիտակի շրջանի Խնկոյան գյուղի կոլտնտեսությունը հինգ ամսում կատարել է պետությանը կաթ վաճառելու տարեկան իր պարտավորությունը։ Կոլտնտեսականները որոշել են օգոստոս ամսին կատարել նաև պետությանը միս վաճառելու պարտավորությունը։

Ստեփանավանի շրջանի Հոբարձիի «Կարմիր Հոկտեմբեր» կոլտնտեսությունը կաթի վաճառքի կիսամյակի առաջադրանքը կատարել է 107,7, իսկ մսի վաճառքինը՝ 112 տոկոսով։ Հինգ ամսում կոլտնտեսությունը նախատեսված 1.330 ցենտների դիմաց արտադրել է 1.335 ցենտներ կաթ։

Իջևանի շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում այս տարվա հինգ ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացել է 1.860 ցենտներով, ձվինը՝ 44 հազար 404 հատով։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում և կոլտնտեսություններում ու սովխոզներում նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը բուռն թափով շարունակում է ծավալվել: Աշխատավորները ձգտում են բարձր ցուցանիշներով կատարել ստանձնած պարտավորությունները:

—◆—



## ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԽՈՍՔԸ ԱԳԻՏԱՏՈՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԶԵՆՔՆ Է

Պատահում է, որ ագիտատորը զրույցի ժամանակ գործ է ածում ընդհանուր, շաբլոն նախադասություններ, կրկնում է ասված և վերասված մտքեր, որոնք չեն թափանցում լսողների սիրտը, նրանց մեջ չեն առաջացնում տրամադրություն, հուզում։ Նման դեպքերում ունկնդիրները դադարում են իրենց ագիտատորին լսելուց, սկսում են հորանջել և ագիտացիոն պարապմունքը համարում են ժամավաճառություն։

Որպեսզի ագիտատորը չդատապարտվի ունկնդիրների կողմից նման անտարբեր վերաբերմունքի, նա նախօրոք պետք է լավ նախապատրաստվի իր զրույցին, խորն ուսումնասիրի նյութը, հոգեպես ապրի նրանով, ոգևորվի։ Պարզ է, եթե ագիտատորը չոգևորվի իր նյութով, չհուզվի թեմայով, ապա նա ոչ մի կերպ չի կարող իր խոսքը դարձնել տպավորիչ, նրանով ներգործել

մարդկանց մտքի և զգացումների վրա։

Ագիտացիոն աշխատանքի հիմնական խնդիրն է՝ ոգեշնչել աշխատավորներին հաջողությամբ կատարելու սովետական ժողովրդի կողմից ընդունված յոթնամյա պլանը։ Նպատակասլաց, հետաքրքիր, գաղափարական բարձր մակարդակով ագիտացիա կազմակերպելու գործում վճռական դեր կարող է խաղալ գեղարվեստական գրականությունը։ Գեղարվեստական ստեղծագործություններից վերցված օրինակները ագիտատորի խոսքը դարձնում են ավելի դիպուկ ու տպավորիչ, նրան հաղորդելով ներգործելու մեծ ուժ։ Հիրավի, աշխարհի բոլոր ժողովուրդների գեղարվեստական գրականություններն էլ պարունակում են մտքերի ու զգացումների անսահման գանձեր, ճանաչողական անսպառ հնարավորություններ։ Վերցնենք, օրինակ, ռուս ժողովրդի մեծ գրականությունը, որը մարդկությանը տվել է այնպիսի հանճարներ, ինչպիսիք են Պուշկինն ու Տոլստոյը, Լերմոնտովն ու Չեխովը, Գորկին ու Շոլոխովը և այլն։ Իր մեծ վարպետներով աշխարհի ժողովուրդների կողմից սեր ու հարգանք է վայելում նաև մեր հայրենի գրականությունը։ Սովետական հայրենիքի մեջ և նրա սահմաններից շատ հեռու ընթերցողները



գոհունակությամբ են ընդունում Նարեկացու ու Խորենացու, Նալբանդյանի ու Թումանյանի, Շիրվանզադեի ու Զոհրապի, Րաֆֆու ու Մուրացանի և ուրիշ հայ մեծ գրողների երկերը։

Ագիտատորը իր յուրաքանչյուր միտքը տպավորիչ ու հետաքրքիր դարձնելու, իր ունկնդիրների բարձր պահանջները բավարարելու համար կարող է օգտագործել գեղարվեստական գրականության տված օրինակները։ Այդպիսի օրինակները կարելի է վերցնել կլասիկ և սովետական գրականությունից։ Առանձնապես սովետական գրականությունը կարող է ագիտատորի համար ծառայել որպես անսպառ գանձարան, որտեղից նա ի վիճակի է բազմապիսի քաղվածքներով հարստացնել իր զրույցը։

Սովետական գրողներն ստեղծել են բազմաթիվ փայլուն ստեղծագործություններ, որոնք պատկերում են սովետական ժողովրդի հերոսական պայքարը՝ կոմունիզմի հաղթանակի համար, Կոմունիստական պարտիայի ղեկավար դերը ամբողջ աշխարհի աշխատավորների ազատագրական պայքարում՝ ընդդեմ կապիտալի ստրկության։ Սովետական գրականության լավագույն ստեղծագործությունների մեջ, ինչպես, օրինակ, Ա. Սերա-

ֆիմովիչի «Երկաթե հեղեղ», Ա. Ցադեի «Ջախջախում», Ստ. Զորյանի «Գրադարանի աղջիկը» ստեղծագործություններում, Ե. Չարենցի մի շարք պոեմներում և շատ ուրիշ գրողների երկերում պատմվում է այն մասին, թե ինչպես են սովետական բազմազգ ժողովուրդները եղբայրական համագործակցությամբ պայքարել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի համար։ Եթե, օրինակ, ագիտատորը ցանկանում է պատկերավոր կերպով ցույց տալ, թե ինչպես էին դաշնակ խմբապետները ավերածություններ կատարում նախառևոլյուցիոն Հայաստանի գյուղերում ու քաղաքներում, ապա նա կարող է օգտագործել Ե. Չարենցի «Խմբապետ Շավարշը» հայտնի պոեմը։ Իսկ թե ինչպիսի ծանր պայքար են մղել Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները՝ նախկին կապիտալիստական-բռնակալական կարգերի տապալման ու սոցիալիզմի հաղթանակի համար, ապա այդ մասին ագիտատորին սքանչելի նյութ կարող են տալ Ա. Ցադեի «Ջախջախում», Ա. Սերաֆիմովիչի «Երկաթե հեղեղ» վեպերն ու այլ ստեղծագործություններ։

Այժմ խնդիր է դրված մեր երկրում ավելացնել յուղի, մսի, կաթի և գյուղատնտե-



սական մյուս մթերքների արտադրությունը։
Դա հայրենասիրական մեծ գործ է։ Ագիտա-
տորն իր խնդիրը չի կատարի, եթե նա, ա-
սենք, կթվորուհիների ու տրակտորիստների
մոտ միայն չոր ու ցամաք խոսքեր ասի այն
մասին, թե անհրաժեշտ է պայքարել շատ
մթերքներ արտադրելու համար։ Այդ լոզուն-
գը բոլորը գիտեն։ Ագիտատորի գլխավոր
խնդիրն է՝ այդ առաջադրանքը կատարելու
նպատակով ոգեշնչել մարդկանց հայրենա-
սիրության բարձր պաթոսով, մղել նրանց
աշխատանքային սխրագործությունների։
Իսկ այդ գործում նույնպես մեծ դեր կարող
է կատարել գեղարվեստական խոսքի օգտա-
գործումը։ Առերևույթ այնպես է թվում, թե
Մուրացանի «Գևորգ Մարզպետունի»-ն և Դ.
Դեմիրճյանի «Վարդանանք»-ը քիչ կապ ու-
նեին Հայրենական պատերազմի օրերին սո-
վետական մարտիկների կյանքի ու պայքարի
հետ։ Սակայն իրականում փաստերն այլ
բան էին ասում։ Ագիտատորները զորա-
մասերում կարդում էին վերոհիշյալ վեպե-
րից ոգեշունչ հատվածներ, մեր հերոս նախ-
նիների սխրագործություններով ոգևորում
հայ ռազմիկներին, որոնք գրոհում էին մեր
Հայրենիքի թշնամիների դեմ և նրանց հաղ-
թում։



Ճիշտ չէ այն միտքը, որ իբր կթվորուհուն աշխատանքային հաղթանակի մղելու համար անպայման պիտի ագիտատորը նրան նվիրված գովք, բանաստեղծություն կամ պատմվածք կարդա։ Մեր գյուղի աշխատավորներին՝ և՛ կթվորուհիներին, և՛ բամբակագործներին, և՛ տրակտորիստներին ու այգեգործներին աշխատանքային բարձր խանդավառություն կարող են հաղորդել մեր կլասիկ և սովետական շրջանի գրական բոլոր լավագույն գործերը։ Չէ՞ որ մեր սոցիալիստական շինարարության պլանների կատարումը մեծ հայրենասիրություն է, իսկ հայրենասիրության բորբոքումը մեր մարդկանց մղում է աշխատանքային հաղթանակի։ Այդպիսի հայրենասիրությամբ են փայլում հայ գրականության մարգարիտները։ Չէ՞ որ աշխատանքի բարձր արտադրողականության հասնելը մեր օրերում՝ նույնպես հերոսություն է, որը բխում է Հայրենիքին անձնուրաց ծառայելու պատրաստակամությունից, խոր հայրենասիրությունից։

Ագիտատորը, հետևելով մամուլին, պետք է իր զրույցների ընթացքում օգտագործի արտադրության առաջավորների փորձին նվիրված ակնարկներն ու պատմվածքները։



Դրանք գեղեցիկ կերպով կլրացնեն գեղար-
վեստական գրականությունից օգտագործված
կերպարներին, խոսքը կդարձնեն հյու-
թեղ, հուզիչ և ոգեշնչող։ Ագիտատորը չի
կարող յոլա գնալ առանց գեղարվեստական
խոսքի հատու զենքի։ Այդ է պատճառը, որ
մարքսիզմի կլասիկները՝ Մարքսը, Էնգելսը,
Լենինը, իրենց խոսքը ավելի ցայտուն
դարձնելու, այն ժողովրդական մասսաներին
հասցնելու համար հաճախ են օգտագործել
գեղարվեստական գրականության մեծ վար-
պետների ստեղծագործությունները։ Հայտ-
նի է, թե ինչպիսի մեծ ոգևորությամբ էր
Վ. Ի. Լենինը քաղվածքներ բերում ռուս մեծ
գրողներ՝ Նեկրասովի, Շչեդրինի, Տոլստոյի
և մյուսների ստեղծագործություններից։
Մարքսիզմի կլասիկների այդ օրինակին է
հետևում նաև Սովետական Միության Կո-
մունիստական պարտիայի Կենտկոմի Առա-
ջին քարտուղար ու Սովետական պետու-
թյան ղեկավար Ն. Ս. Խրուշչովը, որն իր
ճառերում ու ելույթներում հաճախ օգտա-
գործում է գեղարվեստական գրականու-
թյան տված օրինակներն ու ժողովրդական
իմաստուն ասացվածքները։ Այդ ամենը
լավ պետք է հիշեն մեր ագիտատորները և
իրենց խոսքը դարձնեն ավելի գրավիչ ու
հետաքրքիր։

Յ. ՇՈՂԵՆՑ

# ԶՐՈՒՅՑ ԵՐԿԱՐՕՐՅԱ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ընթացիկ ուսումնական տարում առաջին անգամ մեր ռեսպուբլիկայում բացվեցին երկարօրյա դպրոցներ, որոնք հաջողությամբ գործեցին Երևանում, Լենինականում, Կիրովականում և Արարատում։ Հազարից ավելի աշակերտներ սովորեցին այդ դպրոցներում։

Երկարօրյա դպրոցներում հիմնականում ընդգրկված էին այն երեխաները, որոնց ծնողները աշխատում են արտադրության մեջ, պարտիական, սովետական օրգաններում և այլ հիմնարկներում։ Երեխաներն այստեղ ամբողջ օրը մնում էին դպրոցում։ Դրա համար, բացի ուսուցիչներից, կառավարության որոշմամբ ուսումնական այս նոր տիպի հիմնարկում աշխատում էին նաև դաստիարակներ։ Նրանք դասերից հետո ղեկավարում և օգնում էին աշակերտների դասերի պատրաստմանը, կազմակերպում էին նրանց սնունդը, հանգիստն ու ժամանցը։

Երեխաների ընդունելությունը երկարօրյա



դպրոցներում կատարվում է ծնողների կամ նրանց փոխարինող անձանց գրավոր դիմումի հիման վրա։ Դպրոցում տեղավորվելու համար դիմումներն ընդունվում են ամեն տարի հունիսի 1-ից մինչև օգոստոսի 15-ը ժամանակամիջոցում։

Երկարօրյա դպրոց ընդունված երեխաներին օրական երկու անգամ սնունդ է տրվում։ Սննդի ծախսերի մի մասը հոգում են ծնողները, իսկ մյուս մասը կատարվում է պետության հաշվին։ Երեխաների սննդի և հանգստի կազմակերպման գործում լայնորեն ներգրավվում են նաև երկարօրյա դպրոցների նկատմամբ շեֆություն վերցնող ձեռնարկությունները, սովխոզները, հիմնարկները, ինչպես նաև արհմիութենական կազմակերպությունները։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ կոլտնտեսություններին խորհուրդ է տրվում լայն մասնակցություն ցույց տալ այն երկարօրյա դպրոցների կազմակերպման և նրանց ուսումնա-նյութական բազայի ամրապնդման գործին, որտեղ սովորելու են իրենց կոլտնտեսության երեխաները։

Բացի ուսուցման գործից, երկարօրյա դպրոցներում կազմակերպվում է նաև աշա-

կերտների դասերի պատրաստումը, հանրօգուտ աշխատանքը, ինքնասպասարկումը և աշխատանքային, ֆիզիկական ու էսթետիկական դաստիարակության ուղղությամբ անց են կացվում արտադասարանական-արտադպրոցական զանազան միջոցառումներ։

Ուսուցման պրոցեսում, ինչպես նաև արտադասարանական-արտադպրոցական միջոցառումների կենսագործման ընթացքում, հատուկ ուշադրություն է դարձվում երեխաների նախասիրությունների խրախուսմանը և անհատական ընդունակությունների ու հակումների զարգացմանը։ Այդ նպատակով լայնորեն կատարվում են խմբակային բազմապիսի ու բովանդակալից աշխատանքներ։

Լուրջ ուշադրություն է դարձվում երեխաների մտավոր և ֆիզիկական աշխատանքի ներդաշնակ զուգակցմանը։ Երեխաների ֆիզիկական ուժերի և առողջության պահպանման ու ամրապնդման նպատակով առաջին և երկրորդ դասարանցիների, ինչպես նաև ֆիզիկապես թույլ երեխաների համար կազմակերպվում է ցերեկային քուն՝ 1—2 ժամ տևողությամբ և երկարատև զբոսանքներ ու խաղեր՝ մաքուր օդում։

Չնայած առաջին տարին է, ինչ մեր ռես-



պուբլիկայում գործում են երկարօրյա դպրոցներ, բայց, գիշերօթիկ դպրոցների հետ միասին, դրանք զգալի աշխատանք են կատարում երեխաների դաստիարակության գործում։ Հաճելի է տեսնել, թե ինչպես ծնողներն առավոտյան աշխատանքի գնալիս իրենց երեխաներին ուղեկցում են մինչև երկարօրյա դպրոց և, համոզված լինելով, որ այնտեղ նրանք գտնվելու են հուսալի ձեռքերում, հանգիստ խղճով գնում են աշխատանքի։

Անկասկած, այդ բանը մեծապես նպաստում է մարդկանց աշխատանքի արդյունավետությանը և երեխաների դաստիարակության նպատակասլաց կազմակերպմանը։

Որպես օրինակ կարելի է վերցնել Արարատի երկարօրյա դպրոցը։ Այս դպրոցը տեղավորված է երկհարկանի, նորակառույց, տուֆակերտ մի շենքում, որտեղ սովորում են մոտ 200 աշակերտներ։ Դպրոցում ընդգրկված աշակերտների 80 տոկոսից ավելին ցեմենտի և ազբոշիֆերի գործարանների բանվորների երեխաներ են։ Դպրոցում ստեղծված են լավագույն խոհանոց, ճաշարան՝ բոլոր անհրաժեշտ հարմարանքներով։

Օրական երկու անգամ՝ առավոտյան ժամը 10—11-ը և ցերեկվա 2—3-ը երեխաներն

ստանում են տաք ճաշ։ Ամեն օր դասերը վերջացնելուց ու ճաշելուց հետո երեխաները հավաքվում են դպրոցի ընդարձակ սրահը և մագնիտոֆոնի նվագի ուրախ հնչյունների տակ կատարում պարահանդեսային պարեր, երգում են, շախմատ, շաշկի խաղում, մասնակցում խմբակային պարապմունքներին։

Երևանի, Լենինականի, Կիրովականի դպրոցներում լայն հնարավորություններ են ստեղծված երեխաների աշխատանքային, ֆիզիկական և էսթետիկական դաստիարակության համար։ Մեկ տարի էլ չկա, որ Լենինականում գործում է երկարօրյա դպրոցը, բայց այն արդեն շատ լավ համբավ է ձեռք բերել հասարակայնության լայն շրջաններում։ Եվ պատահական չէ, որ այժմ շատ ծնողներ մեծ ցանկություն ունեն իրենց երեխաներին տեղավորել այնտեղ։ Դպրոցի համար առանձնացվել է հարմարավետ մի շենք, որը մոտ է զբոսայգիներին։ Առևտրի օրգանները եռանդուն կերպով ձեռնամուխ են եղել երեխաների սննդի կազմակերպման գործին։ Նպաստավոր պայմաններ են ստեղծվել ուսումնա-դաստիարակչական աշխատանքների հաջող կազմակերպման համար։ Այժմ այնտեղ սովորում են քաղաքի տարբեր դպրոցներից եկած 300-ից ավելի երեխաներ։



Դրանցից 70-ը սնվում են պետության միջոցներով, իսկ մնացածների սննդի կազմակերպման գործին մասնակցում են նաև ծնողները։ Երեխաների դաստիարակության համար ստեղծված են բոլոր նպաստավոր պայմանները։ Դպրոցն ունի մետաղամշակման, փայտամշակման, կարուձևի կահավորված արհեստանոցներ։ Ձեռք են բերված երաժշտական և սպորտային գործիքներ, փոքրերի համար՝ բազմազան խաղալիքներ։ Հարուստ գրադարանը լայն հնարավորություն է ընձեռում երեխաների արտադասարանային ընթերցանությունը նպատակասլաց կազմակերպելու համար։

Դպրոցի առօրյան սկսվում է առավոտյան ժամը 8-ից և տևում է մինչև երեկոյան ժամը 7-ը։ Հետաքրքիր և բովանդակալից է անցնում երեխաների օրը։ Դպրոցն ունի դաշնամուր, լարային գործիքներ։ Ամեն օր ռադիոհանգույցի միջոցով աշակերտներին հաղորդվում են օրվա նորություններ, մանկական երգեր ու երաժշտություն, գիտահանրամատչելի զրույցներ, հանելուկներ։ Ֆիզիկական դաստիարակության համար ձեռք են բերվել դահուկներ, չմուշկներ, սահնակներ։

Լայն հեռանկարներ ունեն երկարօրյա դպրոցները։ Այդ է պատճառը, որ պետու-

թյունը տարեցտարի հսկայական միջոցներ է հատկացնում այդ դպրոցների կազմակերպման և ուսումնա-նյութական բազաների ամրապնդման նպատակին։ Եթե 1960 թվականին պետության միջոցներից այդ նպատակների համար ծախսվել է 150 հազար ռուբլի (դրամի նոր մասշտաբով), ապա ընթացիկ տարում նույն նպատակների համար բյուջեով առանձնացված է 300.000 ռուբլուց ավելի։ Ներկայումս գործող չորս դըպրոցի փոխարեն առաջիկա ուսումնական տարում երկարօրյա դպրոցների թիվը կհասնի 12-ի, իսկ նրանցում սովորողների թիվը՝ 3.400-ի։ Երկարօրյա նոր դպրոցներ են բացվելու Ղափանում, Էջմիածնում, Հոկտեմբերյանում, Արտաշատում։

Գիտակցելով այն ճշմարտությունը, որ երկարօրյա դպրոցները մեծապես կօգնեն կոլտնտեսականների աշխատանքի ռացիոնալ կազմակերպմանն ու կնպաստեն երեխաների դաստիարակության բարելավմանը, Արտաշատի, Հոկտեմբերյանի շրջանների մի շարք կոլտնտեսություններ ձեռնամուխ են եղել իրենց մոտ երկարօրյա դպրոցների շենքերի կառուցման գործին։ Այս տարի շահագործման կհանձնվի Հոկտեմբերյանի շրջանի Տանձուտ գյուղի դպրոցական շենքը,



որտեղ սեպտեմբերի 1-ից կգործի երկարօրյա դպրոցը։ Դպրոցում ստեղծվում են խոհանոց ու ճաշարան, երեխաների հանգստանալու, քնելու և ժամանցի անհրաժեշտ պայմաններ։

Կգա ոսկի աշունը, կսկսվի խաղողի, բամբակի բերքահավաքը, և Տանձուտի կոլտընտեսականներն ու կոլտնտեսուհիները, ուսուցիչների ու դաստիարակների հոգատարությանը հանձնելով երեխաներին, հանգիստ խղճով կգնան իրենց աճեցրած առատ բերքը հավաքելու։ Իսկ երբ երեկոյան իրենք՝ դաշտից, իսկ երեխաները՝ դպրոցից կվերադառնան տուն դասերը պատրաստած, կուլտուրական վարքի ու աշխատանքային որոշակի հմտություններով, այն ժամանակ միայն պարզ կլինի, թե որքան մեծ գործ են կատարել իրենց կոլտնտեսության ղեկավարները երկարօրյա դպրոց կազմակերպելով։

Երկարօրյա դպրոցները, որ շնորհակալ գործ են կատարում աճող սերնդի դաստիարակության ուղղությամբ, արժանի են մեծ ուշադրության ու աջակցության։

ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՐԳՍՅԱՆ

Հայկական ՍՍՌ վաստակավոր ուսուցիչ

# ՀԱԿԱ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

Դոլարային պրոպագանդան ինչքա՞ն ջանքեր է թափել, որպեսզի հակակոմունիզմի կեղծ դոգմայով թունավորի շարքային լատինաամերիկացու գիտակցությունը։ Ծղճրղան գրքույկների միլիոնավոր տիրաժներ, «մարքսիզմը հերքողների» բարձր վարձատրվող բանակ, այսպես կոչված ազատ աշխարհի ջատագովներ,— մի՞թե հնարավոր է թվարկել Ռուլ-ստրիտի՝ Լատինական Ամերիկայում հակակոմունիզմի զոհասեղանին նետած առատաձեռն պարգևները։ Այո՛, ԱՄՆ-ի մոնոպոլիստները չեն էլ մտածում ժլատության մասին, չէ՞ որ հակակոմունիզմը նույնպես բիզնես է, և ավելին։ Ամենասանձարձակ կողոպուտի, ամենամոլի ռեակցիայի գաղափարական քողարկումը, ռեակցիա, որի օգնությամբ իմպերիալիստները փորձում են ժողովուրդներին հնազանդ պահել,— ահա թե գործնականում ինչ է նշանակում հակակոմունիզմը։ Ուրուգվայի «Լա Մարչ» թերթի խոսքերով ասած մի «հնացած և քրքրված կեղտոտ դրոշ», որը շատ տառապանքներ է պատճառել լատինաամերիկյան երկրներին։



## ՌԵԱԿՑԻՈՆԵՐՆԵՐԻ ԱՐՇԱՎԱՆՔ

Համաշխարհային երկրորդ պատերազմի ավարտումից անմիջապես հետո ԱՄՆ-ի իմպերիալիստները Լատինական Ամերիկայի երկրների հակազգային խոշոր կապիտալիստների և լատիֆունդիստների հետ միասին խաչակրաց արշավանք սկսեցին այդ երկրների ժողովուրդների ազատագրական շարժման դեմ։ Ռեակցիոն պրոպագանդան ուղղված էր առաջին հերթին այն նպատակին, որպեսզի վարկաբեկեր կոմունիստական շարժումը Լատինական Ամերիկայում և դրանով իսկ գլխատեր բանվոր դասակարգը ու աշխատավորների մյուս ջոկատները, ստիպեր նրանց հնազանդորեն կատարելու տերերի կամքը։ Լատինական Ամերիկայի շատ կոմպարտիաներ քշվեցին ընդհատակ։ Այդ երկրների մեծ մասում իշխանության գլուխ անցան ԱՄՆ-ի իմպերիալիստներին հաճելի արյունարբու բռնակալները։

Հակակոմունիզմի պրոպագանդան կոչված է խեղել լատինաամերիկացիներից թաքցնել

ճշմարտությունը Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների մասին։

Հենց այդպիսի գաղափարական հիմքի վրա էլ 1947 թվականին Ռիո-դե-Ժանեյրոյում ստեղծվեց ԱՄՆ-ի և Լատինաամերիկյան երկրների ռազմական բլոկը։ «Ռիո-դե-Ժանեյրոյի պակտին» և հակակոմունիստական բանաձևին համապատասխան, որ այդ երկրների վզին է փաթաթել Ջոն Ֆոստեր Դալեսը, յոթ տարի հետո, յուրաքանչյուր լատինաամերիկյան երկրի ամեն մի գործողություն, եթե այն բխում է ժողովրդի շահերից, Միացյալ Նահանգները դիտում են որպես «միջազգային կոմունիզմի միջամտություն», որպես «սպառնալիք Ամերիկայի խաղաղությանը»։ 1954 թվականին, այդ պատրվակով Գվատեմալայում տապալեցին Խակոբո Արբենսի դեմոկրատական կառավարությունը, թեև, ինչպես նշում է հյուսիսամերիկյան «Գազետա էնդ դեյլի» թերթը, «այդ կառավարության մեջ կոմունիստական ոչինչի չկար»։ «Կոմունիստական ագրեսիայի» մասին պճնազարդ ճառերի օգնությամբ ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանները և նրանց հլուհնազանդ լատինաամերիկյան կառավարությունները փորձում էին ժողովուրդներին



համոզել, թե անհրաժեշտ է ամրապնդել «կոնտինենտալ պաշտպանությունը», կառուցել ռազմական բազաներ և ավելացնել ռազմական ծախսերը։

## ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՑՈՒՄ Է ԱՉՔԵՐԸ

Լատինական Ամերիկայի ժողովրդական մասսաների կենսապայմանների խիստ վատթարացումը բացել է նրանց աչքերը շատ բանի նկատմամբ։ Նպաստել է ինքնագիտակցման արթնացմանը։ Ավելի մեծ թվով մարդիկ սկսում են հասկանալ, թե ինչպես կարելի է ազատագրական պայքարը հաջողությամբ հասցնել մինչև վերջնական հաղթանակ։ «Գաղութային և տնտեսական նվազ զարգացած երկրների ժողովուրդները, որոնք պայքարում են իրենց անկախության համար,— ասել է Ն. Ս. Խրուշչովը 1960 թվականի հուլիսի 12-ի պրես-կոնֆերանսում,— սկսում են ավելի ու ավելի պարզ կերպով գիտակցել, որ միայն մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո կարելի է նվաճել իսկական ազատություն և անկախություն, ազգային և սոցիալական լիակատար ազատություն, տնտեսական անկախություն»։

Ահա թե ինչու ձախողվեցին Լատինական Ամերիկայում կոմունիստական շարժման

ջախջախման ուղղությամբ իմպերիալիստների փորձերը։

Սովետական Միության հետևողական արտաքին քաղաքականությունը, որն ուղղված է խաղաղության կայունացմանը, ժողովուրդների վստահության ամրապնդմանը, ավելի ու ավելի մեծ պաշտպանություն է գտնում Լատինական Ամերիկայի աշխատավորների կողմից։ Միլիոնավոր լատինաամերիկացիներ ակնբախորեն համոզվում են, որ ՍՍՌՄ-ը ոչ միայն չի մտածում ագրեսիայի մասին, այլև ընդհակառակն, անկեղծ շահագրգռվածություն է հանդես բերում նրանց երկրների հետ բարեկամական կապեր հաստատելու գործում։ Նրանք տեսնում են, որ Սովետական Միության քաղաքականությունը համապատասխանում է իրենց շահերին, որովհետև այդ քաղաքականությունն ուղղված է մոնոպոլիստական և գաղութային ճնշման դեմ։ Լատինական Ամերիկայի հասարակ մարդիկ հասկանում են, թե ովքեր և հանուն ինչի են նրանց վախեցնում, թե որն է ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի քաղաքականության տարբերությունը։ «Այդ քաղաքականության էությունը,— ասել է Կուբայի պրեմիեր-մինիստր Ֆիդել Կաստրոն,— այդպիսին է. ՍՍՌՄ-ը հարգում է մեր ռևոլյուցիան ու մեր



սուվերենությունը և ցանկանում է մեզ հետ հարաբերություններ ունենալ հավասարության ու բարեկամության հիման վրա։ Միացյալ Նահանգները ընդհակառակն, արհամարհում են մեր սուվերենությունը և ջանում են պահպանել հին տնտեսական հարաբերությունները, որի հիմքում ընկած է տիրապետության և ագրեսիայի իմպերիալիստական գաղութարարական սիստեմը»։

Դոլարային պրոպագանդայի ջանքերին հակառակ, տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում Սովետական երկրի ձեռք բերած հոյակապ հաջողությունների մասին ճշմարտությունը իր համար ճանապարհ է հարթել Լատինական Ամերիկայում։ Հասարակ լատինաամերիկացին հիացած է սովետական յոթնամյակի վիթխարի առաջադրանքներով, սովետական մարդու տիեզերական թռիչքով, որը մեկ անգամ ևս ապացուցել է սոցիալիզմի գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ։

### «ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ՀԵՏ»

Այսպես, լատինաամերիկացիները քայլ առ քայլ մոտենում են իրադարձությունների և փոփոխությունների իսկական էության ըմբռնմանը։ Սովետական Միության «ագ-

ընսիվության», նրա «հետամնացության» մասին առասպելը ցրվում է մառախուղի պես։ Ահա արդյունքը. Լատինական Ամերիկայի երկրների հասարակության ամենալայն շրջանները այժմ համառորեն պահանջում են դիվանագիտական, առևտրական և կուլտուրական հարաբերություններ հաստատել ՍՍՌՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ։ Ամբողջ աշխարհի, այլ ոչ թե նրա մի մասի հետ»— Կուբայի ազգային հերոս Խոսե Մարտիի այս պատվիրանը դարձել է լատինաամերիկացիների ներկա սերնդի մարտական նշանաբանը։ Օրինակ, խոսելով Սովետական Միության հետ առևտրական հարաբերությունները կարգավորելու մասին, Բրազիլիայի նշանավոր տնտեսագետ Ալենկաստրիան նշում է, որ այժմ «հարցը այն չէ, թե հարկ կա՞ ունենալ այդ հարաբերությունները, այլ այն, որպեսզի չուշանալ այդ (սոցիալիստական— Վ. Լ.) շուկաներից», Լատինական Ամերիկայի գործարար շրջաններն ուղղակի վախենում են մնալ «պառավ աղջկա» վիճակում։ Մեքսիկական բուրժուական ազդեցիկ «Սիեմպրե» շաբաթաթերթը թախծորեն հայտնում է. «այժմ կապիտալիստական բոլոր խոշոր



երկրները և մասնավորապես ԱՄՆ-ը առևտուր են անում սովետական բլոկի հետ, իսկ Լատինական Ամերիկայի երկրները մեծ կաթոլիկներ գտնվեցին, քան ինքը՝ Հռոմի պապը, և մասնակցելով հակակոմունիստական կամպանիաներին, դադարեցրին այդ առևտուրը»։ Իսկ Վենեսուելայի «Տրիբուն պոպուլար» թերթը հարցնում է. «Արդեն լուսինն էլ փոխհարաբերություններ հաստատեց Սովետական Միության հետ, իսկ այդ ե՞րբ է անելու Վենեսուելան»։

ԱՄՆ-ի իմպերիալիստները կոպիտ ճնշում են գործադրում լատինաամերիկյան երկրների վրա, նպատակ ունենալով խանգարել նրանց փոխհարաբերությունների նորմալացումը Սովետական Միության հետ։ Գուցե այդօրինակ «պրոֆիլակտիկ» միջոցառումների միջոցով Ուոլ-ստրիտին հաջողվի ժամանակավորապես կասեցնել Լատինական Ամերիկայի՝ բոլոր երկրների հետ համագործակցելու ասպարեզ դուրս գալը։ Սակայն կյանքը վերջիվերջո իրենը կանի։ «Պատերը փլվում են»,— մոլեգին ճչում է «Ուոլ-ստրիտ ջորնելը», ակնարկելով, թե ինչպես Սովետական Միության կողմից վարվող խաղաղության, բարեկամության և համագործակցության քաղաքականությունը հաղթանակ

հաղթանակի ետևից է տանում Լատինական Ամերիկայում։ Եվ չկա այնպիսի մի ուժ, որը ի վիճակի լիներ կասեցնել, այդ բուռն պրոցեսը։

## ՍՆԱՆԿՆԵՐԻ ՀՈՒՅՍԸ

Իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարախոսները կաշվից դուրս են գալիս ապացուցելու, որ իբր, լատինաամերիկացիների ժողովրդա-ազատագրական պայքարը, Սովետական Միության հետ մերձենալու նրանց ձգտումները «կոմունիստական միջամտության» արդյունք են։ Բայց նրանց բոլոր ճիգերը դատապարտված են տապալման։

Սովետական մարդիկ սևեռուն կերպով հետևում են Լատինական Ամերիկայի հակաիմպերիալիստական պայքարին, նրան մաղթելով հաջողություն։ Սակայն որքան էլ մեծ լինի Սովետական Միության համակրանքն այդ պայքարի նկատմամբ, նա երբեք էլ մտադիր չէ միջամտելու նրա գործին։ Ռևոլյուցիաները չեն արտահանվում։ Սովետական երկրի արտաքին քաղաքականությունը խարսխված է ուրիշ երկրի ներքին գործերին չմիջամտելու սկզբունքի խիստ պահպանման



վրա։ Այդ քաղաքականության հիմքում է սովետական մարդկանց այն անսասան վստահությունը, որ բոլոր ժողովուրդները վաղ թե ուշ ձեռք կբերեն իրենց ազատությունն ու անկախությունը, որ կոմունիզմը բովանդակ մարդկության պայծառ ապագան է։

Սակայն այդ նշանակո՞ւմ է, արդյոք, թե Սովետական Միությունը պետք է մի կողմ կանգնի մեր օրերի ազատագրական փոթորկից, հանգիստ կերպով դիտի, թե իմպերիալիստներն ինչպես են հաշվեհարդար տեսնում ապստամբած ժողովուրդների նկատմամբ։ Ո՛չ։ Սովետական երկրի քաղաքականության նպատակն է աջակցել բոլոր նրանց, ովքեր պայքարի դրոշ են բարձրացրել ընդդեմ հարստահարողների և գաղութարարների, հանուն ժողովուրդների երջանկության։

«Կոմունիստական միջամտության» վկայակոչումները մի բան են միայն նշանակում՝ ԱՄՆ-ի ռեակցիոններները մտադիր են ամեն գնով խոչընդոտել լատինաամերիկյան երկրների ժողովուրդների ազգային ազատագրական հաղթանակին։ Իսկ դա ոչ այլ ինչ է, քան այդ երկրների ներքին գործերին բացարձակապես միջամտելու հայտ, մի փորձ՝ ըստեղծելու մշտապես գործող պատրվակ՝ նման միջամտությունը արդարացնելու համար։

Մերկացնելով այդ մանևրի էությունը, մասնավորապես ամերիկյան սենատոր Կրեյգ Խոսմերի՝ «Կոմունիստական միջամտություն» պայքարի կոչերը, Կուբայի «Ռևոլյուսիոն» թերթը գրում է. «Միստր Խոսմերի համար ամեն մի կառավարություն, որը չի ենթարկվում ԱՄՆ-ի մոնոպոլիստների թելադրանքին, «Կոմունիստական կառավարություն» է, և հետևաբար, նրա դեմ պետք է անհապաղ ուղարկել ծովային հետևակ»։

Կրեյգ Խոսմերի համար «կոմունիզմը» դա Պանամայի ժողովրդի վրդովմունքն է, որը ցանկանում է, որպեսզի իր դրոշը ծածանվի ջրանցքի գոտու վրա։ «Կոմունիզմը» պարոն Խոսմերի համար Պերուի և Վենեսուելայի ժողովուրդների միահամուռ դիմադրությունն է Հյուսիսային մոնոպոլիաների գործակալին։ Եվ, իհարկե, «կոմունիզմը» դա Կուբայի ռևոլյուցիան է, որի անշեղ զարգացումը, չնայած նրա անխուսափելի տապալման և տնտեսական քայքայման վերաբերյալ «էքսպերտների» կանխագուշակումներին, դիտվում է որպես «միջազգային կոմունիզմի գործակալության ավելի ու ավելի ենթարկվող մի ռևոլյուցիա»։

Նման քաղաքականության դատապարտվածությունը ակնհայտ է։ Անգամ ամերիկյան «Դիարիո դե Լաս Ամերիկաս» թերթը միամիտ է համարում այն մեթոդը, որի օգնությամբ բոլոր և ամեն տեսակ հակաամերիկյան հուզումների համար «պատասխանատվությունը գցում են կոմունիզմի վրա»։ «Յունայտեդ ֆրուտ» ընկերությունը, նշում է թերթը, Լատինական Ամերիկայում հեղինակազրկման իմաստով ավելի շատ բան է արել, քան միջազգային կոմունիզմի բոլոր ուժերը միասին վերցրած։ Նույնը կարելի է ասել նաև «Ջեներալ մոտորս», «Ստանդարտ Օյլ», «Ինտերնեյշնլ տելեֆոն էնդ տելեգրաֆ» ընկերությունների մասին։

ԱՄՆ-ի մոնոպոլիստները խելացնոր խաղամոլի պես շարունակ փոխում են խաղաթղթերը։ Սակայն նրանք չեն խուսափի սընանկությունից, նրանք չեն կարող թաքցնել Լատինական Ամերիկայում իրենց տնօրինության սարսափելի հետևանքները։ Լատինաամերիկացիները այժմ տեսնում են, թե որտեղ են իրենց բարեկամները և որտեղ՝ թշնամիները, նրանք ավելի ու ավելի պարզ գիտակցում են, որ ժամանակն է, վերջապես, իրենց երկրների բախտը վերցնել սեփական ձեռքը։

Վ. ԼԵՎԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Բարձր ցուցանիշներով կատարենք ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած պարտավորությունները:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1961 թվականի մայիսի 6-ի հանդիսավոր նիստում ընդունված նամակը՝ ուղղված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությանը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում:*

Յա. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի հանդիսավոր նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում:*



Ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի (թվեր և փաստեր), *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1961 թվականի 10—12 համարներում:*

Ավելի բարձր նախահամագումարյան մրցության դրոշը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 7-ի առաջնորդող հոդվածը:*

2. Հավասարվենք փարոսներին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Մեծ նախաձեռնության արժանավոր շարունակողները, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 27-ի առաջնորդող հոդվածը:*

Խոսում են փարոսները—Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի պլենումը, *նյութեր տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտի 11-ի համարում:*

Մեր փարոսները, *հոդված տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտի 16-ի համարում:*

Աշխատել բարձր արտադրողականությամբ, հավասարվել առաջավորներին, նյութեր արտադրության առաջավորների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտի 29-ի համարում:*

Մեր փարոսները, գրքույկների շարք, *նվիրված ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության առաջավորներին։ Հայպետհրատ, 1961 թ.։*

Փարոսների բրիգադան, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1961 թվականի 10-րդ համարում։*

### 3. Թող ավելի գեղեցիկ ու բարեկարգ լինեն մեր բնակավայրերը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Մոբիլիզացնել բոլոր ուժերը բնակարանային շինարարության պլանը անպայման կատարելու համար։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետում, *ինֆորմացիոն հաղորդագրություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտի 29-ի համարում։*

Բնակարանային շինարարությունը դնել հասարակայնության հսկողության տակ, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտի 30-ի առաջնորդող հոդվածը։*

Առաջ մղել բնակարանային շինարարությունը, *հոդված, տպագրված «Լենինյան ու-*



*ղիով» ամսագրի 1961 թվականի 5-րդ համարում։*

Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզի բանվոր-ծառայողների դիմումը Հայկական ՍՍՌ բոլոր սովխոզների աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի ապրիլի 5-ի համարում։*

Քաղաքների բարեկարգման և գեղեցկության համար, *«Պրավդա»-ի մայիսի 29-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի մայիսի 31-ի համարում։*

Շինարար՝ այդ հպարտ է հնչում, *նյութեր երիտասարդ շինարարների համամիութենական խորհրդակցության մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտի 11-ի համարում։*

### 4. Արդյունավետ օգտագործենք արոտները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— ՍՄԿՊ Կենտկոմի 1961 թվականի հունվարյան պլենումի որոշման կատարումն ապահովող միջոցառումների մասին, *զեկուցում տրված Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում,*

*տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 7-ի համարում։*

Հանրային ճոտի ամառային արոտը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 14-ի առաջնորդողը։*

Հայաստանի անասնաբուծության զարգացումը յոթնամյակում, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1960։*

## 5. Ավելի շատ խոտ և ավելի շատ ճյութալի կեր անասուններին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հողագործության ու անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը, տպագրված «Ս· Հ.»-ի 1961 թվականի հունվարի 20-ի համարում։*

Ապահովել եգիպտացորենի բարձր բերքատվություն, *«Ս. Հ.»-ի մայիսի 30-ի առաջնորդող հոդվածը։*



Հայաստանի անասնաբուծության զարգացումը յոթնամյակում, *գրքույկ, Հայպետհրատ, 1960։*

## 6. Յանքատարածությունները լավ խնամելը բարձր բերքի երաշխիք է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն· Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*—Լիովին օգտագործել Անդրկովկասի գյուղատնտեսության բոլոր ռեզերվները: *Անդրկովկասի ռեսպուբլիկաների խորգյուղատնտեսության առաջավորների հրրդակցությունում արտասանած ճառից,*
*տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փե-*
*տրրվարի 12-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ, արտասանած
1961 թվականի մայիսի 6-ին Երևան քա-
ղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիս-
տում՝ նվիրված Հայաստանում Սովետա-
կան իշխանության հաստատման և Հայաս-
տանի Կոմունիստական պարտիայի կազ-
մավորման 40-ամյակին, *տպագրված «Ս.*
*Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համա-*
*րում։*

## 7. Սովետական Միությունը պայքարում է խաղաղ գոյակցության համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ճառ, արտասանած 1961 թվականի մայիսի 6-ին Երևան քաղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ նըվիրված Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ելույթ ռադիոյով և հեռուստատեսությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 15-ի համարում։*

Բանակցությունները խաղաղության ճըշմարիտ ուղին են, *Ն. Ս. Խրուշչովի և Ջ. Քենեդիի հանդիպման մասին նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 6-ի և 7-ի համարներում։*

Նշումների համար

Նշումների համար




## СОДЕРЖАНИЕ

Стр.

### НАГЛЯДНЫЕ МАТЕРИАЛЫ

Наши рубежи 1961 года . . . . . . . . 1

### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ

В честь XXII съезда КПСС . . . . . . . 5

### МЕТОДИЧЕСКАЯ ПОМОЩЬ АГИТАТОРАМ

**Ц. Шогенц**—Художественное слово боевое оружие агитатора . . . . . . . . . . 13

### ОТВЕТ ЧИТАТЕЛЯМ

**А. Саркисян**—Беседа о школах продленного дня . . . . . . . . . . . . . . . . 20

### МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ

**В. Левин**—Под знаменем антикоммунизма . 28

### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ

Темы и литература для бесед агитаторов . 40

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ստ. Զորյան— Երկերի ժողովածու, հատոր
րորդ, 549 էջ, գինը 92 կ.։

Ի. Վ. Միչուրին— Ընտիր երկեր, 864 էջ,
2 ռ. 05 կ.։

Հոբելյանական ռեսպուբլիկական գեղարվեստա-
կան ցուցահանդես, նվիրված Հայաստանում Սո-
վետական կարգերի հաստատման 40-ամյակին, 304
գինը 1 ռ.։

Խ. Պողոսյան— Վեպեր և կերպարներ, 248
գինը 93 կ.։

Զ. Ա. Աստվածատրյան— Միամյա ծաղկաբույ-
սերի մշակությունը, 105 էջ, գինը 11 կ.։


Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 12 1961 г.

ՎՖ 01710 Պատվեր 337 Տպաքանակ 9

Հանձնված է արտադրության 16/VI 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 22/VI 1961 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ ա-
դյունաբերության և հրատարակչությունների գլխավ-
վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 2։
Գինը 8 կոպ.